Mets Hayk'i t'agavorut'yan bazhanume" Sasanyan Irani ev Hr'omeakan kaysrut'yan mijev (244-253 t't'.) ) [Division of the Kingdom of Greater Armenia between Sasanian Iran and the Roman Empire (244-253)], by Suren T. Eremyan, from *Patma-banasirakan handes [Historico-Philological Journal]* (Erevan, Armenia)1(1976), pp. 91-120, in 22 pdf pages.

# ՄԵԾ ՀԱՅՔԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԲԱԺԱՆՈՒՄԸ ՍԱՍԱՆՅԱՆ ԻՐԱՆԻ ԵՎ ՀՌՈՄԵԱԿԱՆ ԿԱՅՍՐՈՒԹՅԱՆ ՄԻՋԵՎ (244—253 ԹԹ.)

ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Ս. Տ. ԵՐԵՄՅԱՆ

*Գոյություն ունեցող սկզբնաղբյուրների ուսումնասիրությունը՝ կատարված նորագյուտ բնագրերի տվյալների լույսի տակ, ակնհայտ է դարձնում, որ 363 թ. Հովիանոսի «ամոթալի» դաշնագիրը[1] և 384—387 թթ. Մեծ Հայքի թագավորության բաժանումը երկու մարտնչող աշխարհակալությունների միջև- կրկնությունն էր ավելի վաղ ժամանակներում (244—253 թթ.) նման պատմական պայմաններում տեղի ունեցած դեպքերի[3]։*

*Վերելք ապրող Սասանյանների պետությունը՝ Երանշահրը, III դարի կեսերին անընդմեջ պատերազմների մեջ էր իր արևելյան սահմաններն ընդարձակելու նպատակով, բայց ավելի հաճախ պարսկական ագրեսիան ուղղված էր լինում դեպի արևմտյան սահմանները, որը և սովորաբար վերջանում էր նոր հաղթանակներով։ Սրան նպաստում էր այն անկայուն և տարտամ վիճակը, որ գոյություն ուներ Հռոմեական պետության մեջ և որը թուլացնում էր կայսրության պրովինցիաների պաշտպանությունը Արևելքում։*

*Սասանյանների լայն քաղաքական ասպարեզ դուրս գալուց առաջ, երբ դեռ գոյություն ուներ Իրանի պարթևական պետությունը, Հռոմը Արևելքում թելադրողի դերում էր։ Սեպտիմիոս Սևերոսի (193—211) և Ալեքսանդր Սևերոսի (222—235) օրոք Հռոմեական կայսրությունն իր բարձրության վրա էր գտնվում։ Նա կարողացել էր նույնիսկ Պարթևների վերջին Արշակունիներից գրավել Տիգրոնից հյուսիս գտնվող Միջագետքի մեծագույն մասը և կայսրության սահմանագիծը հասցնել մինչև Տիգրիս գետը։ Այս ժամանակներում է կազմակերպվում* Mesopotamia *(Միջագետք) անունով հռոմեական նոր պրովինցիան, որտեղ կենտրոնացվում են կայսրության ռազմական ուժերը՝ միջազգային քաղաքականության ասպարեզում նոր հանդես եկող Սասանյան Իրանի դեմ։*

*Սեպտիմիոս Սևերոսի և Ալեքսանդր Սևերոսի բարեկամական վերաբերմունքը Մեծ Հայքի թագավորության հանդեպ, որի թագավորը համարվում էր «հռոմեական կայսեր և ժողովրդի դաշնակից ու բարեկամ», պայմանավորված էր այն կարևոր ռազմա-ստրատեգիական դիրքով, որ ուներ Հայաստանը Արևելքում Հռոմի համար։ Ռազմական տեսակետից Մեծ Հայքի թագավորությունը գտնվում էր Կապադովկիայի ռազմական շրջանի համակարգի*

---

*[1] Տե՛ս Հակոբ Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատ. Բ, մասն Ա, Երևան, 1957, էջ 177։*

*[2] Նույն տեղում, էջ 233։*

*[3] Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանի քաղաքական վիճակը Արտավազդ V-ի ժամանակ (252/3—261), ՀՍՍՀ ԳԱ «Լրաբեր» (հաս. գիտ.), 1975, № 1, էջ 13—21։*

մեջ և Սեպտիմիոս Սևերոսի ու Վաղարշ II-ի («Վաղարշակ», 186—198) ժամանակներից Հայաստանում պահվում էր հատուկ հեծելազորք՝ «ազատ այրուձի» Հայոց սպարապետի հրամանատարության ներքո, որը կայսրությունից ստանում էր դրամական նպաստ՝ «ռոճիկ ի կերակուր» և հաճախ մասնակցում էր հռոմեացիների պատերազմներին հեռավոր Գերմանիայում ու Եվրոպայի այլ երկրներում։ Պիտի ենթադրել, որ հայ աղեղնաձիգների մասնակցությունը այդ պատերազմական գործողություններին կատարվում էր վասալական ծառայության կարգով, իբրև «ի սպասու ծառայութիւն»։

Արևելքից Հռոմ վերադառնալով, Ալեքսանդր Սևերոսը իր հետ էր տարել ոչ միայն հայ աղեղնաձիգների գնդերը, այլև Սասանյանների հետապնդումից հռոմեացիների մոտ ապաստան գտած պարթևական զորամասերը, ինչպես և ադիաբենական ու արևելյան այլ ժողովուրդների ռազմական կոնտինգենտները[4], որոնք մասնակցում էին պատերազմական գործողություններին Գերմանիայում։ Կայսրության կյանքում դաշնակից հայերի աղեղնաձիգ գնդերի ունեցած աչքի ընկնող դերի մասին է վկայում Տրեբելլիոս Պոլլիոնի հաղորդումը՝ Գերմանիա տարված հայ աղեղնաձիգների բարձրացրած մեծ խռովության մասին (Հռոմում 235 թ.), երբ նրանք կայսր են հռչակում Տիտոսին։ Սակայն վերջինս թագավորեց միայն վեց ամիս[5]։ Այս խռովությունը ուղղված էր հատկապես Մաքսիմինոս Թրակացու դեմ, որը Սևերոսների դինաստիայի դեմ բարձրացրած զինվորական դավադրության պարագլուխն էր։ Ալեքսանդր Սևերոսը սպանվեց, և 235 թ. զինվորների կողմից կայսր հռչակվեց Մաքսիմինոսը[6]։ Բայց այս «զինվորական կայսրը» երկար չկառավարեց։ Մի տարուց հետո Հռոմը, Իտալիան և մի շարք այլ պրովինցիաներ հրաժարվեցին նրան կայսր ճանաչել, իսկ 238 թ. կայսր հռչակվեցին միանգամից երեք հոգի՝ Մարսիմինոսը, Բալբինոսը և Գորդիանոսը։ Երեք ամսից հետո Մաքսիմինոսը և Բալբինոսը սպանվեցին կապիտոլիական մրցախաղերի ժամանակ և կայսերական գահը մնաց տասնուչորսամյա Գորդիանոս III-ին (238—244)[7]։

Հռոմեական կայսրությունը ապրում էր ծանր օրեր։ Եվրոպայում գոթերը և դակերը անցել էին Դանուբ գետը և գրավել Իստրոս քաղաքը։ Իսկ հեռավոր Հռենոսի սահմանագիծը խախտում էին ալամաններն ու ֆրանկները։ Ավելի վատթար էր հռոմեացիների վիճակը Արևելքում։ Այն ժամանակ, երբ Հռոմեական կայսրությունը թուլացել էր և Արևմուտքում գլուխ էին բարձրացրել նրան ենթակա երկրները, Արևելքում ավելի ակտիվացան Սասանյանների ռազմական գործողությունները։

Պարսկական զորքերը գահաժառանգ Շապուհի գլխավորությամբ 241 թ. ներխուժեցին Միջագետք և հասան մինչև Խռոան քաղաքը։ Հերթը հասնելու էր Օսրոենեի մայրաքաղաք Եդեսիային, որը պիտի ենթարկվեր պաշարման ու նվաճման, ուստի Հռոմի միջնորդությամբ գահ բարձացած Էբգար XI

---

[4] Julius Capitolinus, Duo Maximines, XI, 7. Scriptores Historiae Augustae (այսուհետև՝ SHA), „Loeb Classical Library", vol. II, London, 1953, էջ 336, Herodianus, Ab excessu divi Marci libri octo, VII, 2, տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 80։

[5] Trebellius Pollio, Tyranni Triginta. Titus, XXXII, 3, SHA, vol. III, էջ 146։

[6] Aelius Lampridius, Alexander Severus, LIX. 8, LX, I, SHA, vol. II, էջ 298, 300։ Julius Capitolinus, նշվ. աշխ., VII, 5—6; VIII, 1, SHA, vol. II, էջ 190, 192։

[7] Julius Capitolinus, Maximus et Balbinus, III, XIII, XIV, SHA, vol. II, էջ 452, 454, 472, 474, 476։

Հրահատ թագավորը (242—244) բանակցություններ սկսեց Շապուհի հետ, որպեսզի կարողանա փրկել իր թագավորությունը վերահաս վտանգից[8]։ Այդ նշանակում էր, որ հռոմեական Սիրիայի վրա բարձրացել էր պարսկական ներխուժման վտանգը։

Հռոմը կանգնած էր ծանր փորձությունների առաջ։ 242 թ. «Գորդիանոսը բացեց երկդեմ Յանուսի տաճարի դռները, որ նշան էր այն բանի, թե պատերազմը հայտարարված է և գնաց պարսիկների դեմ»[9]։ Այդ Պրետեքստատի և Ատտիկոսի կոնսուլության ժամանակն էր, այսինքն 242 թ.[10]։ Սակայն «Պարսկական պատերազմը» արդեն սկսվել էր, ինչպես հաղորդում է Գորդիանոս III-ի կենսագիր Հուլիոս Կապիտոլինոսը, Գորդիանոսի և Պոմպեյանոսի կոնսուլության տարում, այսինքն 241 թ.[11]։

Այդ այն ժամանակն էր, երբ ծերացած Արտաշիր I-ը (227—243) գահակից էր հայտարարել իր որդուն՝ գահաժառանգ Շապուհին։

Դեպի արևելք գնացող հռոմեական բանակի գլուխ կանգնեց պրետորիանների պրեֆեկտ (արքունի գվարդիայի ղեկավար) Տիմեսիթեոսը, որի դստեր հետ ամուսնացած էր պատանի կայսրը։ Սկզբնական շրջանում կարծես թե հռոմեական զորքերի արշավանքը դեպի Արևելք նմանվում էր հաղթական երթուղու։ 242 թ. Գորդիանոս III-ը իր բանակով անցավ Մեզիան և Թրակիան, իսկ այնտեղից շարժվեց դեպի Եփրատ։ Կիլիկիայի, Կապադովկիայի, Սիրիայի քաղաքներում տեղավորված պարսկական կայազորները, լսելով հռոմեական բանակի գալու մասին, նախօրոք լքում էին իրենց կողմից գրավված քաղաքները գրեթե առանց դիմադրության[12]։ Անցնելով Եփրատը, կայսրը առաջին հերթին գահընկեց արեց Օսրոենեի թագավոր Աբգար XI-ին (242—244), ապա պարսիկներից վերագրավեց Խառանը, Ռաշ-Այնը և Մծբինը[13], որից հետո շարժվեց հարավ-արևելք, դեպի Տիզբոն։

Պարսիկները, «որոնց գալու մասին սարսափած էին արդեն Իտալիայում», Գորդիանոսի հետ առաջին իսկ ընդհարումներից հետո վերադարձան իրենց երկիրը և, ինչպես հաղորդում է նրա կենսագիր Հուլիոս Կապիտոլինոսը, «Հռոմեական պետությունը իր ձեռքում էր պահում ամբողջ Արևելքը»[14]։ Հռոմ ուղարկվող իր ռազմական հաղորդագրություններում կայսրը հայտնում էր, որ ազատագրվել է Անտիոքը[15], որ ինքը հռոմեական կայսրությանն է վերադարձրել Խառանը և այլ քաղաքներ, որ իրենք հասել են մինչև Մծբին և «եթե աստվածները մեզ հովանավորեն, կհասնենք մինչև Կտեսիփոն»[16]։ Սակայն պատանի կայսրին վիճակված չէր հասնելու մինչև Սասանյանների մայրաքաղաքը։

---

[8] Alf. Gutschmid, Untersuchungen uber die Geschichte des Königreichs Osroëne, St.-Petersburg, 1887, էջ 45։

[9] Julius Capitolinus, Gordiani tres, XXVI, 3, SHA, vol. II, էջ 428։

[10] Նույն տեղում։

[11] Նույն տեղում, XXIII, 5, SHA, vol. II, էջ 422։

[12] В. Г. Луконин, Культура сасанидского Ирана, Иран в III—V вв. Очерки по истории культуры, М., 1969, էջ 54։ Julius Capitolinus, նշվ. աշխ., XXVI, 6, XXVII, 1, SHA, vol. II, էջ 430։

[13] Նույն տեղում։

[14] Նույն տեղում, XXVII, 3, SHA, vol. II, էջ 430։

[15] Տե՛ս M. L. Chaumont, Recherches sur l'histoire d'Arménie de l'avènement des Sassanides a la conversion du rayaume, Paris, 1969, էջ 42, ծան. 2։

[16] Julius Capitolinus, նշվ. աշխ., XXVII, 6, SHA, vol. II, էջ 432։

Հռոմեական բանակի գործողությունները համընկան Արտաշիր I-ի մահվան և Շապուհ I-ի պաշտոնական թագադրության արարողությունների ժամանակի հետ։ 243 թ. ապրիլ ամսին Տիզբոնում կայացան Շապուհ I-ի պաշտոնական թագադրության հանդեսները. նա առաջինը Սասանյան գահակալներից ստացավ «արքայից արքայ (շահնշահ) Երան եւ Աներան» տիտղոսը[17], որ այնուհետև կրում էին նրա հաջորդները[18]։

Սասանյաններին իրենց պետության հյուսիսում և ծայր արևելքում անհանգստացնում էր Քուշանների թագավորության գոյությունը։ Իրանում պարթև Արշակունիները ոչնչացվել էին, սակայն հին դինաստիայի ներկայացուցիչներից շատերը՝ Արշակունի սեպուհները ապաստան էին գտել ոչ միայն Հայ Արշակունիների արքունիքում, այլև Քուշանաց Արշակունիների արքունիքում[19]։ Քուշանների թագավորության հիմնական մասը Միջին Ասիայում գտնվող հայ աղբյուրների «Թետալացւոց աշխարհն» էր, որը սերտ կապերի մեջ էր Մեծ Հայքի թագավորության հետ, ունենալով ռազմական համագործակցություն Հայ Արշակունիների հետ ընդդեմ Սասանյանների։ Քուշանները կապեր ունեին նույնիսկ հեռավոր Հռոմեական կայսրության հետ, որտեղ նրանք նախկինի պես հայտնի էին «բակտրիացիներ» հորջորջումով[20]։ Գահին տիրանալուց հետո Սասանյանների քաղաքականությունը մի հիմնական նպատակ էր հետապնդում՝ նվաճել ու իրենց աշխարհակալությանը միացնել բոլոր այն երկրները, որոնք մի ժամանակ աքեմենյան Իրանի կազմում էին գտնվում։ Այս երկրներից էին Մեծ Հայքի և Քուշանաց թագավորությունները, որտեղ տակավին պահպանվում էին Արշակունի դինաստիաները և որտեղ ապաստան էին գտել պարթև Արշակունիների տան՝ կոտորածից վերծ մնացած անդամները։ Ստեղծված իրադրության մեջ պարսիկների դեմ հաճախ միասնական ուժով էին հանդես գալիս հայերը և քուշանները, իսկ երկուսը միասին ձգտում էին օգնել Հռոմին՝ Սասանյանների դեմ նրա պայքարում։ Հայ թագավորներից հատկապես «Խոսրով»—Տրդատ II-ն էր, որ իր դաշնակից վրաց, աղվանից և մազքթաց թագավորների միասնական ռազմական ուժերով օգնության գալով քուշաններին, ձգտում էր թուլացնել Սասանյաններին։

Այժմ էլ, երբ գահ բարձրացավ Շապուհ I-ը, նա առաջին հերթին պիտի չեզոքացներ Երանշահրի հյուսիսում գտնվող մազքթաց Արշակունիներին, որոնց պետությունը այժմյան Դաղստանի ծովափնյա շրջաններից սկսած ձգվում էր հարավում մինչև Կովկասյան լեռների այն լեռնանցքը, որը հայերի մոտ կոչվում էր «Պահլ դուռ»[21]։ Սասանյանները պիտի ապահովեին իրենց սահմանների անվտանգությունը այդ կողմից, հասնելով մինչև հիշյալ լեռնանցքը։

Պարսկական գրքերի նահանջը հռոմեական Արևելքից Վ. Գ. Լուկոնինը բացատրում է նրանով, որ Շապուհ I-ը այդ ժամանակամիջոցում զբաղված

---

[17] Այս տիտղոսը հայերի մոտ այսպես էր հնչում։ Տե՛ս «Եղիշէի վասն Վարդանանց և Հայոց պատերազմին», Երևան, 1957, էջ 24, որտեղ առաջին գործակալ Միհրներսեհի տիտղոսն է՝ «վզուռկ հրամատար Երան եւ Աներանի».

[18] Տե՛ս В. Г. Луконин, Культура сасанидского Ирана, էջ 55։

[19] Տե՛ս «История таджикского народа», т. I, М., 1963, էջ 367։

[20] Նույն տեղում, էջ 368։

[21] «Եղիշէի Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին», Ա և Բ եղանակ, Երևան, 1957, էջ 9, 19։ Պահլ դուռ էր կոչվում այժմյան Շամախուց հյուսիս գտնվող լեռնանցքը։

էր դեպի Իրանի հյուսիս-արևմտյան սահմանները նոր ռազմական արշավանքի պատրաստություններով[22]։

Նոր ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ այդ հյուսիսային արշավանքը տեղի է ունեցել 243 թ. գարնանը, այսինքն Շապուհ I-ի թագադրությունից անմիջապես հետո[23]։ Այս արշավանքի ժամանակ նվաճվել և Սասանյան Իրանին՝ Երանշահրին են կցվել Կասպից ծովի հարավ-արևմտյան և արևմտյան ծովափնյա երկրները[24], որից հետո Սասանյան Իրանի աշխարհակալությունը անմիջապես սահմանակից էր դառնում Մեծ Հայքի թագավորությանը հյուսիս-արևելքից՝ Կուր գետի երկայնքով։ Երանշահրին սահմանակից էր դառնում Աղվանից թագավորությունը, որը առաջին անգամ պիտի զգար Սասանյանների ներխուժման մոտալուտ վտանգը։ Նույն վիճակի մեջ է ընկնում Աղվանքից դեպի արևմուտք գտնվող Վրաց թագավորությունը։ Սակայն Սասանյանները դեռ պետք է ամրապնդեին իրենց դիրքերը Հայաստանում։ Այսպիսով, Հայոց թագավորը մնում էր մենակ։ Նրա կովկասյան դաշնակիցները հազիվ կարողանային պաշտպանել իրենց երկրները։

Ուրեմն Շապուհ I-ը Մեդիայում, Գիլանում և Ատրպատականից հյուսիս ընկած մերձկասպյան երկրամասերում պատերազմել է 243 թ. գարնանը, որից հետո նա իր ուշադրությունը վերստին բևեռել է հռոմեական սահմանի ու Հայաստանի վրա։ Ըստ իս՝ 243 թ. գարնանը նա ավարտել է իր արշավանքը Մեդիայում ու Գիլանում և այնուհետև նորից զբաղվել է հռոմեական սահմանագծով։ Այստեղ երիտասարդ Գորդիանոս III կայսրը լուրջ փորձությունների առաջ կանգնեց։ 243 թ. վերջերին հիվանդացավ և մահացավ հռոմեական զորքի իրական առաջնորդ Տիմեսիթեոսը, այն օրերին, երբ հռոմեական բանակը Ռեշ-Այնայի հաղթանակից հետո[25] Խաբուր գետի ընթացքով մոտեցավ Եփրատին և սկսեց իջնել այդ գետի հոսանքով Սասանյանների մայրաքաղաք Սելևկիա՝ Տիզբոնին հասնելու ակնկալություններով։ Պրետորիանների պրեֆեկտի պաշտոնը տրվեց Փիլիպպոս Արաբին։ Վերջինս այս պաշտոնը օգտագործեց, որպեսզի ինքը դառնա կայսր։

Հմուտ և խորամանկ ռազմագետ Շապուհը ծուղակի մեջ գցեց թշնամուն։ Փորձ, որ չհաջողվեց կատարել Արտաշիր I-ին 232 թ. Հռոմեական բանակը, դիմադրության չհանդիպելով, հասնում է մինչև Տիզբոնի մատույցները, Միսիխես (կամ Բեթ-Մաշկենե) վայրը։ Այստեղ 244 թ. փետրվարի 11-ին տեղի է ունենում մեծ ճակատամարտ, որտեղ հռոմեական զորքը մատնվում է խայտառակ պարտության, իսկ Գորդիանոս III կայսրը սպանվում է[26] և, ինչպես երևում է, նրա դիակը ընկնում է պարսիկների ձեռքը։

---

22 В. Г. Луконин, Завоевания Сасанидов на Востоке и проблема кушанской абсолютной хронологии, «Вестник древней истории» (այսուհետև՝ ВДИ). 1969. № 2, էջ 33։

23 Նույն տեղում։

24 Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Սասանյան Շապուհ I-ի արշավանքը դեպի Անդրկովկասի մերձկասպյան երկրները 243 թ. (տպագրվում է)։

25 Amm. Marcell., XXIII, 5, 17. Տե՛ս Ю. А. Кулаковский, Аммиан Марцеллин, История, перевод с латинского, вып. II, Киев, 1907, էջ 172։

26 Հռոմեական աղբյուրներում Գորդիանոս III-ի մահը նշված է 244 թ. հունվարի 13-ի և մարտի 14-ի միջև։ Տե՛ս A. von Domaszewsky, Die daten der Scriptores Historiae Augustae von Severus Alexander bis Karus, „Sitzungsberichte der Heidelberger Akademie (Phil. -Hist. Klasse)“, VIII, 1917, Heft 1, էջ 23։

Հռոմեական բանակը կայսր է հռչակում Փիլիպպոս Արաբ մականվամբ հայտնի Մարկոս Հուլիոս Փիլիպպոսին (244—249), որը իր դավանանքով քրիստոնյա էր։

Նոր կայսրը շտապեց 244 թ. խաղաղության դաշն կնքել, վճարելով 500 հազար դենար ռազմատուգանք։ Գրեթե միակ գրավոր աղբյուրը, որ ժամանակով մոտ է կանգնած այս դեպքերին, վերոհիշյալ «Քաաբա-ի Զարդուշտ» կոչվող մի քառանկյունի շինության դրսի պատերի վրա փորագրված արձանագրությունն է։ Նշված արձանագրության տեքստը փորագրված է Շապուհ I-ի կողմից այս դեպքերից ավելի ուշ՝ 262 թ. մոտերքը[27] երեք լեզվով՝ պարթևական (պահլավերեն), միջին պարսկերեն և հունարեն[28]։ Ինչպես իրավացիորեն նշում է Վ. Գ. Լուկոնինը, «Շապուհ I-ի հաղթության արձանագրությունը՝ Հռոմի դեմ մղած երեք պատերազմների մասին (ŠKZ) դարձավ հիմնական աղբյուր այս ժամանակաշրջանի քաղաքական պատմության»[29]։

Ինչպես կարելի է կռահել արձանագրության տվյալներից, այդ գնով Փիլիպպոս կայսրը կարողացել է վերադարձնել պարսիկների մոտ գերի ընկած հռոմեական ռազմիկներին, նաև սպանված Գորդիանոս III-ի դիակը։ Գորդիանոս III-ը թաղվել է Զայթա վայրում, Եփրատի ափին, և նրա գերեզմանի վրա կառուցվել է դամբարան, որը տեսել էր դեռևս Ամմիանոս Մարկելլինոսը[30]։

Այս փայլուն հաղթանակը նշանավորելու համար Շապուհ I-ը ճակատամարտի վայր Միսիխեն (Բեթ-Մաշկենե) քաղաքը վերանվանել է «Պերոզ Շապուհր»[31] կամ, ինչպես հայկական աղբյուրներն են ավանդում՝ «Պերոզ-Շապուհ»[32], որ նշանակում է «Հաղթական Շապուհ» (այժմյան Սեյխան գյուղը Բաղդադից հյուսիս-արևմուտք)[33]։

Դեպքերն այլ կերպ են լուսաբանում հռոմեական պատմիչները։ Նրանք լռությամբ են մատնում Պերոզ-Շապուհի ճակատամարտը և Գորդիանոս III-ի սպանությունը այնտեղ, և վերջինիս մահը վերագրում են պրետորիանների պրեֆեկտ Փիլիպպոս Արաբին, որը ձգտում էր հագնել նրա կայսերական ծիրանին։ Անշուշտ, նախապատվությունը պիտի տալ Շապուհ I-ի արձանագրությանը (ŠKZ), չնայած նա ևս զերծ չէ չափազանցություններից։ Օրինակ, վերջինս հաղորդում է, որ նորընտիր Փիլիպպոս կայսրը «մեզ (այսինքն

---

27 Տե՛ս Н. В. Пигулевская, Города Ирана в раннем средневековье, М.—Л., 1956, էջ 167։

28 Տե՛ս E. Honigmann et A. Maricq, Recherches sur le Res Gestae divi Saporis, Bruxelles, 1953, էջ 112—116։

29 В. Г. Луконин, Культура сасанидского Ирана, էջ 50։

30 Amm. Marcell., XIII, 5, 17.

31 Տե՛ս В. Г. Луконин, Культура сасанидского Ирана, էջ 53։

32 «Գիրք թղթոց», Թիֆլիս, 1910, էջ 41, 42։ Չպետք է շփոթել Մոսուլից հյուսիս գտնվող Պերոզ Շապուհի հետ (այժմ Փեշաբուր գյուղը)։

33 Peroz Šahpuhr հետագայում կոչվում էր Անբար։ Ցիտիրուղտի նահատակության հայկական վերսիան պարունակում է այս անվան ժողովրդական ձևը «Ֆերշապուհ»։ Ամմիանոս Մարկելլինոսը գիտի Pirisabora ձևը։ Տե՛ս E. Honigmann et A. Maricq, նշվ. աշխ., էջ 113—118։ Իսիդոր Քարակացին այս վայրը գիտե [illegible], անունով, որ համապատասխանում է այժմյան Սեյխանա գյուղին։ Տե՛ս Է. Լ. Դանիելյան, Իսիդոր Քարակացու «Պարթևական կայանները», «Պատմա-բանասիրական հանդես», 1971, № 4, էջ 172, 178, ծան. 30 և քարտեզ։

Շապուհ I-ին) հարկատու դարձավ», որ ճիշտ չպետք է լինի[34]։ Մ. Մ. Դյակոնովը նույնիսկ համարում է, որ հռոմեացիների պարտությունը այնքան էլ մեծ չէր, քանի որ այն սահմանափակվում էր համեմատաբար ոչ մեծ ռազմատուգանքով[35]։

Բանակի կողմից կայսր հռչակված Փիլիպպոս Արաբը շտապում էր Հռոմ, որպեսզի ծերակույտը հաստատեր իր դահակալությունը, ուստի նա համաձայնվում է բոլոր այն պայմաններին, որ թելադրում էր հաղթող կողմը։ Ստեղծված իրադրությունն օգտագործում են պարսիկները։

Հայոց թագավոր Տրդատ II-ը, որը հույս ուներ հռոմեացիների ռազմական օգնության վրա, լքվել էր դեպի Հռոմ շտապող Փիլիպպոս Արաբ կայսեր կողմից։ Ահա այս ժամանակ, ինչպես երևում է, Շապուհ I-ի զորքերը գրավել են Մեծ Հայքի թագավորության մեծ մասը, և Փիլիպպոս Արաբը, հարկադրված, պիտի ճանաչեր ստեղծված իրադրությունը։ Նա Շապուհ I-ի հետ կնքում է խաղաղության պայմանագիր, զիջելով պարսիկներին Հայաստանի մեծ մասը. սրա համար է, որ բյուզանդական պատմիչ Զոսիմոսը[36] խաղաղության այդ պայմանագիրը բնորոշում է իբրև «ամենաամոթաբեր հաշտություն»։ Զոսիմոսը (III, 32, 4) հաղորդում է. «Շատ ժամանակ անցնելուց հետո՝ Գորդիանոսը պատերազմեց Պարսից թագավորի դեմ և պատերազմի ընթացքում սպանվեց, սակայն նաև այս հաղթությունից հետո պարսիկները ոչ մի բան չգրավեցին հռոմեացիների հպատակության տակ եղողներից։ Բայց երբ Փիլիպպոսն իշխանության գլուխ անցավ՝ նա պարսիկների հետ կնքեց ամենաամոթաբեր հաշտությունը»[37] (Zosimi comitis et ex advocati fisci historia nova, III, 32, ed. Bekker, p. 169: χρόνοις δὲ πολλοῖς ὕστερον Γορδιανοῦ τοῦ βασιλέως Πέρσαις ἐπιστρατεύσαντος καὶ ἐν μέσῃ τῇ πολεμίᾳ πεσόντος, οὐδὲ μετὰ ταύτην τὴν νίκην οἱ Πέρσαι παρεσπάσαντό τι τῶν ἤδη Ῥωμαίοις ὑπηκόων γεγενημένων, καὶ ταῦτα Φιλίππου διαδεξαμένου τὴν ἀρχὴν καὶ εἰρήνην αἰσχίστην πρὸς Πέρσας θεμένου)։

Հիրավի, փաստերը ցույց են տալիս, որ չնայած պարտության, հռոմեական կայսրության տերիտորիաները Արևելքում մնացել էին նույնությամբ. Շապուհը սահմանափակվել էր միայն ռազմատուգանքով։ Սակայն իր աղեղնաձիգ զնդերով Հռոմի կողմում կռվող Հայոց թագավորը մնաց միայնակ և Հայաստանի հաշվին էր, որ Սասանյան Իրանը Հռոմից ստանում էր նոր տերիտորիաներ։ Ահա այս հանգամանքն է, որ հայկական աղբյուրներում առաջ է բերում սուր տարաձայնություններ։ Ինչպես երևում է, Տրդատ II-ի հռոմեասեր քաղաքականության հետևանքն էր համարվում Հայաստանում ստեղծված անելանելի վիճակը։ Աղբյուրների մի մասը՝ Արշակու-

[34] Տե՛ս В. Г. Луконин, Культура сасанидского Ирана, էջ 55։

[35] М. М. Дьяконов, Очерк истории древнего Ирана. М., 1961, էջ 61։ «Ամենաամոթաբեր հաշտությունը» կնքելու տարեթվին (244 թ.) են վերաբերում հռոմեական մի քանի արծաթե դրամներ, որոնց ձախ կողմից կարդացվում է՝ Pax fundata cum Persis («Խաղաղություն հաստատեալ ընդ Պարսս»)։ Տե՛ս Հ. Աստուրյան, Քաղաքական վերաբերությունները ընդ մեջ Հայաստանի և Հռովմա 190-են ն. Ք. մինչև 428 հ. Ք., Վենետիկ, 1912, էջ 241, ծան. 2։

[36] Զոսիմոսը ժամանակակից էր բյուզանդական կայսր Անաստասիոսին (491—518) և իր «Նոր պատմություն» երկում հիմնականում շարադրում է Հռոմեական պետության 270—410 թթ. պատմությունը։ Զոսիմոսի մասին տե՛ս З. В. Удальцова, Идейно-политическая борьба в ранней Византии, М., 1974, էջ 93—99։

[37] Տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 83։

նի ավագ սեպուհները և նախարարների ազդեցիկ մասը, անցնում է պարսիկների կողմը։

Անդրադառնալով 244 թ. Փիլիպպոս Արաբի և Շապուհ I-ի միջև կնքված խաղաղության դաշնագրին, պիտի նշել, որ այն իր բնույթով պետք է համանման լիներ 363 թ. Հովիանոսի «ամոթալի» դաշնադրությանը, երբ «հռոմեական կայսեր և ժողովրդի դաշնակից ու բարեկամ» Հայաստանը ու նրա թագավորը մատնվեցին բախտի քմահաճույքին։ Բայց այս քիչ է, 244 թ. խաղաղության պայմանագիրը առաջին հերթին նման էր 387 թ. պայմանագրին, երբ հայ Արշակունիների թագավորությունը բաժանվեց երկու աշխարհակալությունների միջև և երկու մասում էլ առժամանակ հանդուրժվում էր տեղական դինաստիայի թագավորությունը։ Ըստ իս, այդ Մեծ Հայքի թագավորության առաջին բաժանումն էր, որ երևում է VI դարի բյուզանդական հեղինակ Եվագրիոսի վկայությունից. «Մեծ Հայքը առաջ հռոմեացիների հպատակն էր, բայց Փիլիպպոսը, հաջորդելով Գորդիանոսին՝ տվեց այն Շապուհին, որով Փոքր Հայքը հռոմեացիների ձեռքը մնաց, իսկ բոլոր մնացածը՝ պարսիկներին»[38] (Evagrios, Historia ecclesiastica, V, 7, ed. Bidez-Parmentier, Londres, 1898, p. 203։ ...της παλαι μεν Μεγαλης Ἀρμενιας, ὕστερον δε Περσαρμενιας επονομασθεισης—η πρωην Ῥωμαιοις κατηκοος ην, Φιλιππου δε του μετα Γορδιανον καταπροδοντος αυτην τω Σαπωρη, η μεν κληθεισα Μικρα Ἀρμενια προς Ῥωμαιων εκρατηθη, η δε γε λοιπη πασα προς Περσων)։

Միայն Մարկվարտն էր, որ փորձեց վերծանել այս մեջբերման մեջ գործածված «Փոքր Հայք» հասկացողությունը։ Նրա կարծիքով Եվագրիոսի մոտ այսպես են անվանված Մեծ Հայքի հարավային նահանգները՝ Ծոփքը և Կորդուքը, որոնք մնացել էին հռոմեացիների ձեռքում, իսկ Մեծ Հայքի մնացյալ մասը տրվելու էր պարսիկներին[39]։ Իսկապես, Ծոփքը պիտի մնար կայսրությանը, իսկ թե ինչպես կարող էր առանց վերջինիս սահմանակից Աղձնիք նահանգի Կորդուքը մնալ հռոմեացիների ձեռքում՝ մնում է անհասկանալի։ Սասանյանները այնքան ուժեղ էին, որ, համենայն դեպս, իրենց թիկունքում գտնվող Կորդուքը չէին զիջի հռոմեացիներին։ Եվագրիոսի մոտ գործածված «Փոքր Հայքի» միակ ճիշտ վերծանումն այն կլինի, եթե նրա տակ հասկանանք Ծոփքը և նախկին Փոքր Հայքի հիմնական մասը կազմող (մինչև մ. թ. ա. 66 թվականը) Բարձր Հայք նահանգը։ Եթե մեր եզրակացությունը ճիշտ է, ապա ստացվում է, որ Հռոմեական կայսրությանը մնացել էին Մեծ Հայքից միայն երկու նահանգ՝ Ծոփքը և Բարձր Հայքը, այսինքն նույն երկրամասը, ինչ որ կայսրությունը ստացել էր 387 թ. Մեծ Հայքի թագավորության բաժանման ժամանակ, ուստի 244 թ. դաշնագրով երկու աշխարհակալությունների միջև անցնող սահմանագիծը նույնը պիտի լիներ, ինչ որ հետագայում՝ 387 թ. հաստատված սահմանագիծը[40]։

Մեր ենթադրությունը հաստատվում է վերջերս հայտնաբերված աղբյուրներով, առաջին հերթին՝ «Քաաբա-ի Զարդուշտի» Շապուհ I-ի արձանագրության (ŠKZ) տվյալներով։ Նախկին հետազոտողները, իրենց ձեռ-

[38] Նույն տեղում, էջ 83։

[39] J. Markwart, Untersuchungen zur Geschichte von Eran. Zweiter Heft, Leipzig, 1905, էջ 218—220, ծան. 2 („Philologus“, Supplementband, X, Heft 1)։

[40] 387 թ. սահմանագծի մասին տե՛ս Н. Адонц, նշվ. աշխ., էջ 1—27։ Տե՛ս նաև Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացույց»-ի, էջ 70 և գրքին կցված քարտեզը։

*քի տակ ունենալով միայն բյուզանդական պատմիչների վկայությունները, որոնք նշված դեպքերից մի քանի դար հետո են գրվել, ճիշտ եզրակացության չէին հանգում։ Նրանց (Մոմզեն, Նյոլդեքե, Խալաթյանց, Մարկվարտ, Մանանդյան և այլն) կարծիքով, իրականում խաղաղության պայմանները մնացել էին թղթի վրա և Մեծ Հայքի թագավորությունը պահպանվել էր իր նախկին վիճակում։ Ինչպես ստորև կտեսնենք, նորահայտ աղբյուրների և նոր ուսումնասիրությունների լույսի տակ այս կարծիքը հերքվում է։ Սակայն պիտի նշել, որ Հակոբ Մանանդյանն այնուամենայնիվ վարանում է և 244 թ. դաշնագրին անդրադառնալով, նշում է, որ «այս խնդիրը դեռ վերջնականապես չէ մեկնված և բավական մութն է»*[41]*։*

*Ինչպես ասացինք, մեզ հասած կցկտուր տեղեկությունները ենթադրել են տալիս, որ 244 թ. հաշտության պայմանագիրը իր բնույթով նման է եղել 387 թ. համաձայնագրին և Մեծ Հայքի թագավորությունը բաժանվել է երկու մասի, ըստ որում մեծագույն մասը անցել էր պարսիկներին և այնտեղ շարունակել է թագավորել Տրդատ II Արշակունին, անշուշտ ճանաչելով իր կախվածությունը Շապուհ I-ից*[42]*։ Սակայն, ինչպես երևում է, այնուամենայնիվ Հայոց թագավորը երկար չի հանդուրժել այդ վիճակը և այդ տեսակետից թերևս մասամբ ճիշտ են նախկին հետազոտողները, որ 244 թ. պայմանագիրը չի իրականացվել և մնացել է թղթի վրա։ Այդ տարտամ վիճակը տևել է մինչև 253 թ., երբ Շապուհ I-ը ստիպել է Հռոմին ճանաչել կնքված պայմանագիրը, իսկ մինչ այդ՝ 245—253 թթ. միջև, Հայաստանն իր Տրդատ II թագավորով ապստամբ վիճակում էր և չէր ուզում ճանաչել իրեն պարտադրած քաղաքական իրականությունը։*

*Ըստ երևույթին, 245—253 թթ. միջև Սասանյանների դիրքերը իրենց արևմտյան սահմաններում և Հայաստանում որոշ չափով խախտվել էին, որն ունի իր բացատրությունը։ Շապուհ I-ը հարկադրված է եղել մտածել նաև իր պետության արևելյան սահմանների ապահովության մասին և, ինչպես 243 թ., այժմ ևս, կնքելով խաղաղության դաշինք Փիլիպպոս Արաբի հետ, ժամանակավորապես հռոմեական սահմանագծի պաշտպանությունը և Հայաստանը թողել է իր որդուն՝ գահաժառանգ Որմիզդ-Արտաշիրին, որին խորենացին շփոթում է Արտաշիր I-ի հետ և շարունակում է կոչել Արտաշիր։*

*Վ. Գ. Լուկոնինի պրպտումները բերում են նրան այն եզրակացության, որ 245—248 թթ. միջև տեղի է ունեցել Շապուհ I-ի արշավանքը դեպի հյուսիս՝ Քուշանների թագավորությունը՝ Քուշանշահրը։ Այս ժամանակաշրջանում Քուշանների թագավորությունը բաղկացած էր երկու մասից՝ առաջինն էր բուն «երկիրը քուշանաց» Միջին Ասիայում կամ «Թետալացւոց աշխարհն», որի կենտրոնը գտնվում էր «ի Բահլ Շահաստան»*[43] *(վերջինիս մոտ էր գտնվում Վառուշան քաղաքը)*[44]*. երկրորդ թագավորությունը ընդգրկում է Հնդկաստանի հյուսիս-արևմտյան մասերը՝ Փենջաբ, Քաշմիր, Սինդ և Ութար*

---

41 *Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 84։*

42 *Վ. Գ. Լուկոնինը ևս հանգում է այն եզրակացության, որ Հայաստանի մի մասը ենթարկվել է Շապուհ I-ին։ Տե՛ս* В. Г. Луконин, Завоевания Сасанидов на Востоке и проблема кушанской абсолютной хронологии, ВДИ, 1969, № 2, *էջ 35։*

43 *Տե՛ս «Սեբեոսի եպիսկոպոսի Պատմութիւն», գլ. Բ, Երևան, 1939, էջ 10։*

44 Б. Г. Гафуров, Таджики. Древнейшая, древняя и средневековая история, М., 1972, *էջ 154։*

Փրադեշը, մինչև Բենարես քաղաքը Գանգեսի վրա[45]։ Սա Քուշանշահրի հընդկա-պարթևական թագավորությունն էր Պուրուշապուրա կամ Պաշկիբուրա (այժմ Փեշավար) կենտրոնով[46], որտեղ իշխում էր Արշակունիների հնդկա-պարթևական ճյուղը և սովորաբար կոչվում էր Հնդկաստան կամ հայերեն «Հնդիկք»։ Սակայն նեղ իմաստով այն կոչվել է «Լիմիրիկէ»[47], ինչպես այդ պահպանել են Պտղոմեոսը (VII, 1, 8)[48] և «Աշխարհացոյցը»[49]։ Հնդկա-պարթևական Քուշանների մայրաքաղաք Պուրուշապուրայի անունը պիտի պահպանված լինի Պտղոմեոսի *Πορουσαπουρα կամ *Πουρουσαπουρα ձևով (մեզ հասած բնագրում՝ Ποδοπερουρα, 117°80′—14°15′)[50]։

Վ. Գ. Լուկոնինը ուշադրություն է դարձնում այն հանգամանքի վրա, որ Բալխում (հուն. Բակտրա կամ Զարիասպա, որից հայկ. Զարասպ կամ Բաղխ) նստող Քուշանների թագավորը Պարթևական—Կարենյան տոհմից էր։ Ըստ նրա, սա հնդկա-պարթևական և Քուշանների թագավորների միջև երբեմն գոյություն ունեցած կապերի արտացոլումն է[51]։

Ուրեմն «Կարենյան—Պահլավ» տոհմը պիտի փնտրել Քուշանշահրի հարավային (հնդիրանական) մասում։

Ահա այստեղ՝ Ինդոս գետի հովիտն էր հասել Շապուհ I-ը իր բանակով և պատերազմ էր մղում հնդիրանական Արշակունի թագավորի դեմ։ Շապուհ I-ի արշավանքը դեպի հյուսիս և հյուսիս-արևելք՝ Քուշանաց թագավորության հարավային մասը, նպաստավոր պայմաններ էր ստեղծել Հայոց թագավորի համար։ Մի առ ժամանակ Հայաստանում ստեղծվում է այնպիսի վիճակ, երբ ըստ 244 թ. պայմանագրի Հռոմը, ի դեմս կայսր Փիլիպպոս Արաբի, հրաժարվել էր օգնել Հայոց թագավորին, եթե պարսիկները հարձակվեն նրա վրա, իսկ «Խոսրով»-Տրդատ II-ը, չճանաչելով «ամենաամոթաբեր դաշնագիրը», շարունակում է կռվել Սասանյան Իրանի դեմ։ Ստեղծված իրադրությունը հետազոտողների մոտ այն տպավորությունն է թողնում, որ այս ժամանակ Հայաստանը փաստորեն նվաճված չի եղել, և երկիրը շարունակում էր մնալ ինքնուրույն։ «Աղբյուրների վկայություններից պարզ երևում է սակայն,— գրում է Հ. Մանանդյանը,— որ Հայաստանը չէր նվաճված Սասանյան Պարսկաստանի կողմից ոչ Փիլիպպոս Արաբացու և ոչ էլ նրա հաջորդի՝

---

45 Նույն տեղում, էջ 151։

46 Նույն տեղում։

47 Այս անունը Սեբեոսի մեզ հասած բնագրում աղավաղված «կիլիկեցւոց» ձևով է հիշատակվում (Սեբեոս, էջ 10)։ Ավելի ճիշտ է պահպանվել այս անունը Վարդան պատմիչի մոտ «լիւրիկեցւոց» («Վարդանայ վարդապետի՝ Հաւաքումն պատմութեան», Վենետիկ, 1862, էջ 14 «...և զՈրբել, յորմէ Ռետալք, և զՄոսոք որ առ զԼիւրիկեա...», էջ 31, «...Ես գրեցի Ագաթանգեղոս, զի մեծն Արշակ ունէր չորս որդիս. զառաջինն թագաւորեցոյց Ռետալացւոց, և զերկրորդն Լիւրիկեցւոց, և զերրորդն Պարթևաց. զչորրորդն Հայոց...»։ Ճիշտ ընթերցումը պիտի լինի՝ Լի[մի]րիկա, Լի[մի]րիկեցւոց։ Վարդան պատմիչի մոտ ճիշտ է բերված Ագաթանգեղոսի հունարեն բնագրի և Սեբեոսի մոտ պահպանված ավանդությունը Արշակունի դինաստիայի չորս ճյուղերի մասին, որտեղ հնդիրանական մասը ընդգրկում էր Հնդկաստանի «Լիմիրիկե» աշխարհը և որի տեղադրությունը որոշվում է այժմյան Փեշավար քաղաքով։

48 Λιμυρική χώρα (VII, 1, 8)։ Տե՛ս L. Renou, La Géographie de Ptolémée l'Inde (VII, 1—4), Texte etabli, Paris, 1926, էջ 5։

49 «Աշխարհացոյց», էջ 6—Լիմիրիկոն։

50 L. Renou, նշվ. աշխ.։

51 Տե՛ս В. Г. Луконин, Завоевания Сасанидов на Востоке..., էջ 28, ծան. 45։

Դեկոսի ժամանակ (249—251)։ Նա իր անկախությունը պահպանել էր մինչև Գալլոս կայսեր (251—253) ժամանակը»[52]։ Սա այն շրջանն էր, երբ Շապուհ I-ը զբաղված էր Քուշանշահրի թագավորության հնդկա-պարթևական մասի նվաճումով և հնարավորություն էր տվել Հայոց թագավոր «Խոսրով»-Տրդատ II-ին վերջին ճիգերը գործադրել իր երկիրը օտար նվաճողների լծից ազատագրելու համար։ Այս պայքարը սերտորեն կապված էր Քուշանշահրի Արշակունիների պայքարի ելքից։ Եթե նրանք հաղթեին Սասանյաններին, Հայաստանը ևս կարող էր հաջողություն ունենալ, ուստի անհրաժեշտ էր հարվածել Իրանին արևմտյան կողմից, որպեսզի արևելքում նա պարտություն մատնվեր։ Ահա այս պատմական իրադրությունն է, որ յուրահատուկ ձևով է արտացոլվել Ագաթանգեղոսի և Խորենացու հաղորդումների մեջ, որտեղ այդ պայքարի գլուխ կանգնած է Հայոց «Խոսրով Մեծ» թագավորը, որ իրականում Տրդատ II-ն է։ Մենք տեսանք, որ 244 թ. դաշնագրի մասին խոսելիս Զոնարասը իբրև հայոց թագավոր հիշատակում է Տրդատին։ Սա այն Տրդատն է, որը առաջին անգամ հանդես է գալիս Կասիոս Դիոնի մոտ (գիրք 58, գլ. 27, 4) 216 թ. դեպքերի կապակցությամբ, երբ նա գահակալեց, փոխարինելով Անտոնինոս Կարակալլայի կողմից բանտարկված հորը՝ Խոսրով I-ին։ «Շատ պարզ է, ըստ այսմ,—գրում է Հ. Մանանդյանը,— որ հայ պատմիչների մոտ վիպական Խոսրովին վերագրված պարսիկների դեմ պատերազմները հիշողություն են, իրապես, այն երկարատև ու համառ կռիվների, որ պատմական այս Տրդատ II-ը, իբրև հռոմայեցիների դաշնակից ու վասալ, վարել էր Արտաշիր I-ի ու Շապուհ I-ի դեմ»[53]։ Ագաթանգեղոսը վկայում է, որ Խոսրովի պատերազմները Սասանյանների դեմ տևել են 11 տարի[54], որ ըստ մեր հաշիվների ընկնում են 245—256 թթ. միջև և, ինչպես կտեսնենք, համապատասխանում են պատմական իրականության։ Այսպիսով, 245—248 թթ. ընթացքում Շապուհ I-ը պատերազմել է Քուշանշահրի հնդկա-պարթևական մասում և Հայոց «Խոսրով»-Տրդատ II թագավորը հանդես է գալիս իբրև քուշանաց Արշակունիների դաշնակից և միայն այդ տեսանկյունով հասկանալի է դառնում Խորենացու ստորև բերվող վկայությունը. «Խոսրով զօրօք իւրովք յինքն և հիւսիսային ազգօք Արտաշրի յաղթեաց, հալածական առնելով մինչև յաշխարհն Հնդկաց»[55] կամ՝ «Փախուցեալ ի Խոսրովայ Արտաշիր մինչ ի յաշխարհն Հնդկաց»[56]։ Այս տեղեկությունը ենթադրել է տալիս, որ «Խոսրով»-Տրդատ II-ը ռազմական օգնություն է ցույց տվել իր տոհմակից և դաշնակից հնդկա-քուշանների Արշակունի թագավորին, որը, սակայն, պարտվեց։ Սրանից հետո, ըստ երևույթին, Շապուհ I-ը կոտորել է հնդկա-պարթևական Արշակունի «Կարենյան Պահլավի» տոհմը։ Փրկվում է միայն մանուկ Պերողամատն, «նախնի մեծ ազգին Կամսարակա-

52 Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 84։

53 Նույն տեղում, էջ 85։

54 Իսկ ի գալուստ ամին միւսոյ զօր բազում կուտէր յոյժ. գումարտակ առնէր, զնոյն զօր կոչէր. և ևս բազում քան զնոյն ապաստակ սփռեալ զկողմամբքն Ասորեստանի, մանաւանդ զի և զօրք Տաճկաց ի թիկունս եկեալ էին. աւար առեալ զերկիրն ամենայն՝ քաջութեամբ դառնային յիւրաքանչիւր տեղիս։ Եւ ամս մետասան ստէպ ստէպ զայս օրինակ աւար առեալ աւերէին զամենայն երկիր սահմանացն, որ ընդ Պարսից թագաւորութեամբն և ընդ իշխանութեամբն էր։ Ագաթանգեղոս, 23 Բ, էջ 19։

55 Խորենացի, II, ՀԳ, էջ 210։

56 Նույն տեղում, ՀԴ, էջ 211։

նաց»[57], որին փոխցնում են Քուշանաց աշխարհ, իսկ այնուհետև՝ Հայաստան, որտեղ առաջ եկավ կամսարականների նախարարական տունը։

Ռազմական օգնությունը հնդկա-քուշաններին պիտի կապել այս ժամանակաշրջանի հետ, երբ պարսիկների ուշադրությունը կենտրոնացված էր Իրանի հեռավոր հյուսիս-արևելյան ծայրամասերի վրա։

Քուշանաց Արշակունի թագավորը, որ պարտություն էր կրել իր թագավորության հնդկա-պարթևական մասում, Խորենացու մոտ շփոթված է պարթևական վերջին թագավոր Արտավանի հետ, ուստի հաղորդման այս մասը գտնվում է նախորդ տեղեկությունից առաջ։ Պատմահայրը գրում է, որ «իբրև լուաւ զաղմուկ շփոթին թագաւորն Հայոց Խոսրով, դիմեալ յօգնականութիւն Արտաւանայ, եթէ հնար լիցի աճապարել ապրեցուցանել միայն զԱրտաւան, և միջամուխ եղեալ յԱսորեստան՝ լսէ զբօթ մահուանն Արտաւանայ, և զմիաբանութիւն ամենայն զօրաց Պարսից և նախարարաց, նա և զիւրոյ ազգին Պարթևաց և Պահլաւկաց, բայց ի ցեղէն Կարենեան, առ որ հրեշտակս առաքեալ դառնայ յաշխարհս մեծաւ տրտմութեամբ և զկծանօք»[58]։

Սասանյանների այս արշավանքի արդյունքը եղել է այն, որ Քուշանշահրի հարավային մասը մինչև Հնդկաստանի Փեշավար քաղաքը, Շապուհ I-ը նվաճել է և այդ երկրամասը միացնելով Իրանի հյուսիս-արևելյան նահանգներին, կազմել է նոր կախյալ թագավորություն՝ «Սակաստանի, Տուրեստանի և Հինդի մինչև ծովի ափերը». այդ միացյալ երկրների թագավոր է նշանակվել Շապուհ I-ի որդի Ներսեհը (248—276), որը հետագայում հռչակվում է «Արմենիայի մեծ թագավոր» (276—293 թթ.)[59]։

Այսպիսով, Սասանյանները այս արշավանքով ապահովում են իրենց աշխարհակալության հյուսիս-արևելյան ծայրամասի անվտանգությունը և իրենց ռազմական ամբողջ ուժերը կենտրոնացնում են արևմուտքում՝ կայսրության սահմանակից Միջագետքում և Հայաստանում։ Ստեղծված պայմաններում Հայոց թագավորը ընկնում է աննախանձելի վիճակի մեջ։ Նա դիմում է հռոմեական կայսր Փիլիպպոս Արաբին, խնդրելով նրանից ռազմական օգնություն, իսկ այս նշանակում էր խախտում 244 թ. պայմանագրի և նոր պատերազմի առիթ երկու մարտնչող աշխարհակալությունների միջև։ Խորենացու մոտ պահպանված հաջորդ վկայությունը ապացուցվում է ŠKZ-ի տվյալներով։ Խորենացին, շփոթելով Որմիզդ-Արտաշիրին Արտաշիր I-ի հետ, իսկ, ինչպես տեսանք, Տրդատ II-ին հիշատակելով պատվանուն հանդիսացող «Խոսրով» անվան տակ, հաղորդում է, որ Խոսրովը Արտավանին չի կարողանում օգնել և փրկել։ Սասանյան Արտաշիրի (իմա՝ Որմիզդ-Արտաշիրի) դեմ կռվելու համար Հայոց թագավոր Խոսրովը (իմա՝ Տրդատ II) «փոյթ ընդ փոյթ այդ առնէ Փիլիպպոս կայսեր Հռովմայեցւոց, օգնականութիւն ի նմանէ խնդրելով»[60]։ Փիլիպպոս կայսրը մահացել է 249 թ., ուրեմն այդ օգնությունը հռոմեացիներից հայոց թագավորը կարող էր ստանալ 245—249 թթ. միջև։ Հիրավի, խաղաղությունը Հռոմի և Սասանյան Իրանի միջև տևել է ընդամենը 4—5 տարի և, ինչպես, խաղաղության 4-րդ կամ 5-րդ տարում, այսինքն

[57] Նույն տեղում, ՀԴ, էջ 210—211։

[58] Խորենացի, II, ՀԱ, էջ 208։

[59] В. Г. Луконин, Завоевания Сасанидов на Востоке.., էջ 34. 37։ Տե՛ս նաև՝ Б. Г. Гафуров, նշվ. աշխ., էջ 153։

[60] Խորենացի, նույն տեղում։

Փիլիպպոս կայսեր մահվան նախօրյակին, հայոց թագավորը ռազմական օգնություն է ստացել նրանից, որով և խախտվել է խաղաղության պայմանագիրը[61]։ Այդ տեղի պիտի ունենար 249 թ. և ապացուցվում է այլ աղբյուրների վկայություններով։ Բացի այդ, բացառված չէ, որ այս անգամ Տրդատ II-ը օգնության համար դիմել է նաև քուշանների թագավորին, որ այն ժամանակ պիտի լիներ Վեհսաճանը (Վասուդեվա)[62]։ Համենայն դեպս, Վ. Գ. Լուկոնինը, հետևելով Մովսես Խորենացու կողմից բերվող փաստերին, գտնում է, որ Հայոց Խոսրով թագավորի (իմա՝ Տրդատ II) դեսպանությունը Քուշանաց թագավոր Վեհսաճանի մոտ կարող էր տեղի ունենալ 244—249 թթ.[63], այսինքն այն ժամանակ, երբ նա դիմել էր կայսր Փիլիպպոս Արաբին՝ ռազմական օգնություն խնդրելով։ Ինչպես տեսանք, այս ժամանակ (245—248 թթ.) Քուշանշահրը ենթարկվել էր Սասանյանների ներխուժման, սակայն չնվաճվեց, այլ միայն զրկվեց իր հարավային երկրամասերից։ Ահա այս ժամանակաշրջանին է վերաբերում Խորենացու տեղեկությունը, ըստ որի այն ժամանակ, երբ հայոց թագավորը ռազմական օգնություն ստացավ Փիլիպպոս Արաբից, «հասանեն առ նա ոմանք ի հրեշտակաց իւրոց, որք ի պատուականագոյն ազգն երթեալ էին, ի խորագոյն աշխարհն, ի նոյն ինքն ի ներքս ի Բահլ. բերին նմա համբաւ, եթէ «ազգական քո Վեհսաճան, հանդերձ ցեղին իւրով Կարենեան Պահլավ ոչ հնազանդեալ Արտաշիրի (իմա՝ Շապուհ I-ին), այլ ի կոչ քո դիմեալ գայ առ քեզ»[64]։

Շապուհ I-ի «Քաաբա-ի Զարդուշտ» արձանագրության տվյալներից երևում է, որ այս անգամ խաղաղությունը խախտել են հռոմեացիները և առիթը եղել է Հայաստանը։ Արձանագրության բառերով ասած՝ «Կեսարը նորից խախտեց (բառացի՝ ստեց) և Արմենիայում ապօրինություն (բառացի՝ անարդարություն) կատարեց»։ Թե ինչը նկատի ունի արձանագրության բնագիրը, մեզ գաղափար է տալիս Խորենացու վերոհիշյալ տեղեկությունը, որի ժամանակը ճշտում է Զոնարասի (XII, 19) մի հաղորդումը։ Վերջինս ասում է, որ Փիլիպպոս կայսրը «հաշտություն կնքելով պարսից թագավոր Շապուհի հետ, դադարեցրեց պատերազմը պարսիկների հետ և վիչեց նրանց Միջագետքը և Հայաստանը։ Բայց երբ նա տեսավ, որ հռոմեացիները վշտացած

---

61 Նույն տեղում, ՀԲ, էջ 208—209։ Խորենացու հաղորդման մեջ ուշադրության արժանի է այն փաստը, որ Փիլիպպոս կայսրը չի կարողանում հռոմեական զորքերով «զօրավիգն լինել Խոսրովայ։ Այլ օգնէ նմա ի ձեռն գրոյ, հրամայելով սատարել նմա յամենայն կողմանց» (II, ՀԲ, էջ 208)։ Անշուշտ, խաղաղությունը չխախտելու համար՝ կայսրը իր դաշնակիցներին հրամայում է օգնություն գալ բոլոր կողմերից։ Սրանց թվում պիտի լիներ նաև վրաց թագավորը, որի մասին խոսելու ենք ստորև։

62 Ինչպես ենթադրում է Ռ. Մ. Գիրշմանը (R. M. Girshman. La probleme de la cronologie des Kouchans, „Cahiers d'histoire mondiale", III, Neuchatel, 1947, № 3, էջ 300 և հտ.) այս Վեհսաճանը պիտի լինի՝ Վասուդեվա I-ը։ Այստեղ ուշադրության արժանի է, որ այս թագավորի անունը մեզ հասել է հնդկական վերջավորությամբ -deva և –սաճան վերջավորությամբ՝ ըստ հայկական ավանդության։ Արդյոք սաճան-ը կապ չունի «սագնիկ» ցեղանվան հետ, որ նշանակում է «սակ», «շակ»։ Եթե մեր ենթադրությունը ճիշտ է, պետք է կարծել, որ այս անվան հնագույն ձևը պիտի լիներ «վեհսա[գ]ճան», որ պիտի նշանակեր «վեհ սագճաց», «տէր սագճաց»։ Տե՛ս նաև՝ „История таджикского народа", т. I, М., 1963, էջ 367 և հտ.։

63 Տե՛ս В. Г. Луконин, Завоевания Сасанидов на Востоке.., стр. 28.

64 Խորենացի, II, ՀԲ, էջ 209։

են այդ երկրների կորստի պատճառով՝ մի փոքր հետո դաշնագիրն անվավեր համարեց և երկրները ետ վերցրեց»[65] (Zonaras, XII, 19, ed. Dindorf, III, p. 130—131: σπονδὰς δὲ πρὸς Σαπώρην θέμενος τὸν τῶν Περσῶν βασιλεύοντα, τὸν πρὸς Πέρσας κατέλυσε πόλεμον, παραχωρήσας αὐτοῖς Μεσοποταμίας καὶ Ἀρμενίας. γνοὺς δὲ Ῥωμαίους ἀχθομένους διὰ τὴν τῶν χωρῶν τούτων παραχώρησιν, μετ᾽ ὀλίγον ἠθέτησε τὰς συνθήκας καὶ τῶν χωρῶν ἐπελάβετο):

Ինչպես տեսնում ենք, 245 թ. խաղաղության դաշնագրի համաձայն հռոմեական Միջագետքը պրովինցիան անցել է Սասանյաններին, իսկ Մեծ Հայքի թագավորության մեծ մասը դարձել է պարսիկներին ենթակա վասալ թագավորություն: Քանի որ խաղաղության պայմանագրի խախտողը եղել է նույն Փիլիպպոսը, պարզ է, որ այդ տեղի պիտի ունենար նրա կենդանության օրոք, ոչ ուշ, քան 249 թ.՝ երբ Փիլիպպոս Արաբը մահացավ և կայսր հռչակվեց Դեկոսը (249—251):

Այսպիսով, ŠKZ-ի տվյալները գալիս են ապացուցելու Խորենացու, Զոնարասի, Զոսիմոսի և Եվագրիոսի տեղեկությունների ճշտությունը այս դեպքերի մասին և հարկադրում են վերանայել Հակոբ Մանանդյանի ներքոհիշյալ եզրակացությունը. «Աղբյուրների վկայություններից պարզ երևում է սակայն,— գրում է Հ. Մանանդյանը,— որ Հայաստանը չէր նվաճված՝ Սասանյան Պարսկաստանի կողմից ո՛չ Փիլիպպոս Արաբացու և ո՛չ էլ նրա հաջորդի՝ Դեկոսի ժամանակ (249—251): Նա իր անկախությունը պահպանել էր մինչև Գալլոս կայսեր (251—253) ժամանակը»[66]: ŠKZ-ի տեղեկությունները ցույց են տալիս, որ Հռոմեական կայսրության և Սասանյան Իրանի միջև խաղաղությունը խանգարվել էր Փիլիպպոս կայսեր վերջին տարում, առնվազն 249 թ., և նախահարձակը եղել էր հռոմեական կողմը: Ինչպես կարելի է կռահել Խորենացու վկայությունից, Հայոց թագավոր Տրդատ II-ը, հռոմեացիներից ռազմական օգնություն ստանալով, ապստամբել և անցել էր կայսրության կողմը: Սրանով խախտվել էր խաղաղության պայմանագիրը, որը Շապուհ II-ին առիթ էր տվել նորից վերսկսելու պատերազմական գործողությունները հռոմեական սահմանագծում և Հայաստանում: Պարսկական զորքերի հրամանատար նշանակվեց թագաժառանգ Որմիզդ Արտաշիրը[67], որը չհապաղեց ներխուժել հռոմեական Միջագետք և Սիրիա: Կարելի է համարձակորեն ասել, որ պատերազմական վերջին երկու արշավանքները հռոմեացիների դեմ տեղի են ունեցել դահաժառանգ Որմիզդ Արտաշիրի անմիջական հրամանատարության ներքո և վերջացել են նրանով, որ 262 թ. նա դարձել է «Արմենիայի մեծ թագավոր»:

252 թ. սկսվեց պարսկական զորքերի երկրորդ արշավանքը. Նրանք ներխուժեցին հռոմեական պրովինցիա Սիրիա, և Բարբալիսոս քաղաքի[68] մոտ պարսկական բանակը ջախջախիչ պարտության մատնեց հռոմեական 60 հա-

65 Տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 83:

66 Նույն տեղում, էջ 84:

67 Տրեբելլիոս-Պոլլիոնը հիշատակում է Որմիզդ-Արտաշիրին Odomastes (Oromasdes) անվան տակ: Trebellio Pollio, Tyranni triginta, Cyriades, II, 2, SHA, էջ 66, և հմմտ. էջ 67, ծան. 2:

68 Բարբալիսոս քաղաքի քաղաքապետական տերիտորիան, իբրև «փոքր աշխարհ» Ասորիքի, հիշատակում է «Աշխարհացոյցը»՝ «Բալբանիտիս» (պիտի լինի «Բարբալիտիս») աղճատված ձևով: Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 44:

կարանոց զորքը։ Այս երկրորդ արշավանքի ժամանակ պարսկական զորքերը գրավել են Ասորիքի, Կիլիկիայի, Կապադովկիայի 37 քաղաքները[69]։ Պարսկական զորամասերը հասնում են մինչև Փոքր Հայքի Սատաղա քաղաքը և նրան սահմանակից Մեծ Հայքի Հոմանա քաղաքը և, այդպիսով, օղակի մեջ է առնվում ամբողջ Մեծ Հայքը։ Այս արշավանքի ժամանակ, հավանաբար, պարսիկները հետապնդում էին մի հիմնական նպատակ. անջատել Մեծ Հայքը, այն ամբողջությամբ գրավել և ստիպել հռոմեացիներին պաշտոնապես ճանաչելու այդ։

Այս դեպքերը տեղի էին ունեցել Գալլոս կայսեր (251—253) ժամանակ, երբ գոթերը Դանուբի կողմից հարվածում են կայսրության թիկունքը և զրկում հռոմեացիներին արևելյան սահմանները պաշտպանելու հնարավորությունից։ Ստեղծված պայմաններում ապստամբ Հայաստանը չէր կարող երկար դիմադրել և 252—253 թթ. ենթարկվում է Սասանյան Իրանին։ Ինչպես հաղորդում է Զոնարաս (XII, 2, 1), «նորից սրա (Գալլոսի) ժամանակ սկըսվեցին պարսիկների խլրտումները և նրանք նվաճեցին Հայաստանը[70]. այս երկրի Տրդատ թագավորը փախավ, իսկ նրա որդիները մեկնեցին պարսից կողմերը»[71] (Zonaras, XII, 21, ed. Dindorf, III, p. 137։ ἤρξατο δ' αὖθις ἐπὶ τούτου (Γάλλου) ἡ κίνησις τῶν Περσῶν καὶ κατεσχέθη παρ' αὐτῶν ἡ Ἀρμενία, τοῦ ταύτης βασιλέως Τιριδάτου φυγόντος, τῶν δὲ παίδων ἐκείνου προσρυέντων τοῖς Πέρσαις)։

Այս տեղեկությունից կարելի է կռահել, որ հայկական արքունիքը երկփեղկվել է։ Արքունիքի հիմնական մասը անցել է Սասանյանների կողմը և գեթ ժամանակավորապես փրկել է Արշակունիների տան գահակալումը Հայաստանում, իսկ մի մասն էլ թողել է հայրենիքը և գնացել նահանջող հռոմեական զորամասերի հետևից կայսրության սահմանները։ Սրանք էին՝ Հայոց թագավոր Տրդատ II-ը և գահաժառանգ Խոսրովը[72]՝ իրենց կողմնակիցներով։ Այնուհետև պարսիկներին անցած Հայաստանի մեծագույն մասում, Վաղարշապատ մայրաքաղաքում, «Արմենիայի մեծ թագավոր» դարձավ Տրդատ II-ի որդիներից մեկը, կամ նրա եղբայրը՝ Արտավազդ V-ը (252/3—261), որին ճանաչեց Շապուհ I-ը։ Սրանով վերջացավ Սասանյան Իրանի երկրորդ արշավանքը[73]։ 262 թ. մոտերքը փորագրված «Քաաբա-ի Զարդուշտ» արձանագրությունը (ŠKZ) որպես «Արմենիայի մեծ թագավոր» արդեն գիտե Շապուհ I-ի որդի, գահաժառանգ Որմիզդ-Արտաշիրին (262—272) և Հայաստանի

---

69 E. Honigmann et A. Maricq, նշվ. աշխ., էջ 143։

70 Հետազոտողների մոտ դերիշխում է այն կարծիքը, որ Հայաստանը նվաճվեց Սասանյան Իրանի կողմից 244—253 թթ. միջև։ E. Honigmann et A. Maricq. նշվ. աշխ., էջ 131—151, В. Г. Луконин, Культура сасанидского Ирана, էջ 57։ Թ. Մոմզենը (նշվ. աշխ., էջ 387) համարում է, որ Շապուհը գրավել է Հայաստանը 252 կամ 253 թ., իսկ Հ. Մանանդյանը (նշվ. աշխ., էջ 84) դնում է 252/3 թ.։

71 Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 84—85։

72 Ա. Ա. Մարտիրոսյանը իր հոդվածում՝ «Հայաստանը և առաջին Սասանյանները» («Պատմա-բանասիրական հանդես», 1975, № 3, էջ 151), հենվելով Մ. Չամչյանի (Պատմութիւն Հայոց, հտ. Ա, Վենետիկ, էջ 615) մոտ վկայակոչված Տիղեմոնտիոսի վկայության վրա, գտնում է, որ այս Խոսրովը գահակալել է 252 թ., այնինչ սա Խոսրով II-ն է, որը թագավորած պիտի լինի Հայաստանի հռոմեական մասում 273—287 թթ.։

73 Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանի քաղաքական վիճակը Արտավազդ V-ի ժամանակ (252/3—261), էջ 13—21։

պատմության մեջ սկսվում է մի նոր ժամանակաշրջան, որը Խորենացին համարում է «ժամանակ անիշխանութեան» կամ «ամք անիշխանութեան»[74], 262—298 թթ. միջև[75]։

Չնայած նրան, որ 252/3 թ. երկու մարտնչող պետությունների միջև խաղաղություն էր կնքվել և ճանաչվել էին 244 թ. հաշտության պայմանները, այնուամենայնիվ պատերազմական վիճակը մնացել էր։

Սակայն Բարբալիսոսի հաղթանակից հետո կայսրությունը պիտի տեղի տար և շուրջ 256 թ. պատերազմական գործողությունները դադարեցին և երկու աշխարհակալությունների միջև կնքվեց խաղաղություն, որի կոնկրետ պայմանների մասին մենք տեղեկություն չունենք[76]։ Բայց դա հազիվ մի քանի տարի է տևել և ավելի շուտ ունեցել է զինադադարի բնույթ։ Հռոմեական կայսրության վիճակը ավելի վատթարացավ, երբ 260 թ. գերի ընկավ Վալերիանոս կայսրը։ 256 թ. խաղաղության արդյունքն է եղել այն, որ հելլենիստական աշխարհի խոշորագույն կենտրոն Դուրա-Եվրոպոսը մի առ ժամանակ ընկնում է պարսիկների գերիշխանության ներքո։ Հնագիտական պեղումների ժամանակ հայտնաբերված արձանագրությունները ցույց են տալիս, որ սասանյան կայազորը գտնվել է Դուրա-Եվրոպոսում 256 թ. մինչև 262 թ.[77]։

Այս ժամանակաշրջանում պետք է տեղի ունենար նաև Վրաց և Աղվանից թագավորությունների ենթարկումը Սասանյան Իրանին։ Վրացական ավանդական պատմությունը, որ հասել է մեզ XI դարի պատմիչ Լեոնտի Մռովելու շարադրությամբ, հենվում է հիմնականում Ագաթանգեղոսի երկի վրա և Վրաց թագավորության ենթարկումը Սասանյաններին կապում է Հայոց Խոսրով թագավորի սպանության հետ[78]։ Ինչպես էլ մոտենանք այս տեղեկություններին, մի բան ակնհայտ է՝ 262 թ. մոտերքը փորագրված «Քաաբա-ի Զարդուշտ» եռալեզու արձանագրության մեջ վրաց թագավոր Համազասպը (հունարեն բնագրի տող 60 ʽἈμαζάσπου τοῦ βασιλέως τῆς Ἰβηρίας)[79] հիշատակվում է սասանյան արքունիքի այն ավագանու շարքում, որոնք իշխանությունը ստացել են արքայից արքա Շապուհ I-ից[80]։ Հայաս-

74 Խորենացի, II, ՀԶ, էջ 214. ՀԷ, ՀԹ, էջ 215, 217։ Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Նախշ-ի Ռուստեմի «Քաաբա-ի Զարդուշտ» հուշարձանի արձանագրության վկայությունները Հայաստանի մասին, «Պատմա-բանասիրական հանդես», 1966, № 2 (33), էջ 59—69։

75 252—298 թթ. այսինքն՝ 46 տարի Մեծ Հայքի երկու մասերում միաժամանակ թագավորել են պարսկական վասալ և հռոմեական վասալ թագավորներ, սակայն «ամք անիշխանութեան» են կոչվում այն տարիները, երբ Հայաստանի մեծագույն մասում իշխել են ու Արշակունի-Սասանյան Որմիզդ-Արտաշիրը, Որմիզդակ-Շապուհը և Ներսեհը. դա 262—298 թվականներին էր։

76 В. Г. Луконин, Культура сасанидского Ирана, էջ 57։ Ըստ Ագաթանգեղոսի ավանդական տվյալների, 256 թ. «Խոսրովի» պատերազմի 11-րդ տարին էր։ Ըստ իս՝ «Խոսրովը» պատերազմել է «Արտաշիրի» դեմ 245—256 թթ.։

77 Նույն տեղում, էջ 58։

78 ლეონტი მროველი, ცხოვრება ქართველთა მეფეთა, ქართლის ცხოვრება, ტექსტი დადგენილი ყველა ძირითადი ხელნაწერის მიხედვით, ყაუხჩიშვილის მიერ.. ტომი I, თბილისი, 1955 (այսուհետև՝ ქ. ც., I), էջ 59—64։

79 E. Honigmann et A. Maricq, նշվ. աշխ., էջ 17։

80 Սրանք են՝ Ադիաբենների Արտաշիր և Կրմանի Արտաշիր թագավորները, Դենակ թագուհին, որոնցից հետո արձանագրության մեջ հիշատակված է Իբերիայի թագավոր Համազասպը։

տանի պարսկական մասում այս ժամանակ (261—262 թթ.) արդեն թագավոր էր Խոսրով-Որմիզդ-Արտաշիրը (հունարեն բնագրի տող 40՝ Χοσρόυ[81]— Ὁρμίζδ-Ἀρταξείρ)[82]։ Վերջինս «Խոսրով» մակդիրն է կրում իբրև տիրող դինաստիայի ներկայացուցիչ։ Որոշ փաստեր հնարավորություն են տալիս պարզելու Համազասպի գահակալման ժամանակը։ Մեզ հասել են տեղեկություններ, թե ինչ արձագանք է գտել Վալերիանոս կայսեր գերությունը 260 թ. Սասանյանների կողմից։ 261 թ. Շապուհ I-ի դեսպաններն իրենց և հարևան երկրների թագավորներին հանձնում են նամակներ, որով հայտնում են պարսիկների այդ մեծ հաղթանակի մասին։ Այս հաղթական ուղերձին առանձին երկրների գահակալներ տարբեր կերպ արձագանքեցին։ Ըստ Տրեբելլիոս Պոլլիոնի[83] Հայոց Արտավազդ V թագավորը իր պատասխան նամակում չի թաքցրել համակրանքը հռոմեական կայսեր հանդեպ, չնայած հարկադրված է եղել պաշտպանել պարսիկների շահերը։ Միևնույն ժամանակ, ըստ Տրեբելլիոս Պոլլիոնի, բակտրիացիները (քուշանները), վրացիները, աղվանները և տավրոսկյութները առհասարակ հրաժարվել են արքայից արքայի նամակները ստանալ և նույնիսկ հայտնում են հռոմեացիներին, որ նրանք պատրաստ են օգնելու Վալերիանոսին գերությունից ազատելու համար[84]։ Արտավազդը իր վերոհիշյալ նամակից հետո համարվում էր անվստահելի անձնավորություն և այս առիթ հանդիսացավ նրան գահընկեց անելու և հայկական գահը հայտարարելու Սասանյան դինաստիայի «երկրորդական գահ»։ Այն տրվում է Շապուհ I-ի որդուն՝ գահաժառանգ և պարսկական զորքերի գերագույն հրամանատար Որմիզդ-Արտաշիրին[85]։ Պետք ենթադրել, որ այս նույն ժամանակ գահընկեց է արվել վրաց թագավորը, որի անունն էր, ըստ ավանդական պատմության, Ասփագուր՝ Փառնավազյան-Արշակունյան դինաս-

---

[81] «Խոստրով» ձևը գործ է ածվում հայոց մեջ դեռևս XIII դ. «թագաւոր» իմաստով. «Ջխոստրով սեհմք մանուկ և հանդիսաւոր նահատակ, զարքայանունն և զկրողն կոչմանն». Հայոց նոր վկաները, հրտր. Մանանդյան և Աճառյան, Վաղարշապատ, 1903, էջ 33։

[83] E. Honigmann et A. Maricq, նշվ. աշխ., էջ 15։

[83] Trebelli Pollionis, Valeriani duo, III, 1--3.

[84] Նույն տեղում, IV, 1։ Ըստ երևույթին, Խորենացու (II, 2Բ) մոտ պահպանվել է այս պատասխանների արձագանքը։ Ըստ այդ վկայության, Հայոց Խոսրով թագավորին հեռավոր Քուշանաց աշխարհից «լուր բերին, թե քո ազգական Վեհսաճանը իր Կարենյան Պահլավ ցեղով Արտաշիրին չհնազանդվեց, այլ քո կոչին անսալով. գալիս է քեզ մոտ» (Խորենացի, I., 2Բ, աշխ. թրգմ. էջ 207)։ Կ. Թումանովը (C. Toumanoff, The Third Century Armenian Arsacids. A Chronological and Genealogical commentary, „Revue des etudes Armeniennes", VI, 1969, էջ 255 256) ինչպես Artavastes rex Armeniorum-ին, այնպես էլ նրա կողմից ուղարկված նամակը Շապուհ I-ին Վալերիանոսին ազատելու խնդրանքով, համարում է գրական կեղծիք։ Նրա ասելով այս նամակները, որոնք կազմված են Թուկիդիդեսի ճառերի օրինակով, ինչպես նմանօրինակ մյուս ստեղծագործությունները, հանդիսանում են գրական հնարանք։ Արտավազդի նամակը իսկապես Թուկիդիդեսի ճառերի օրինակով կարող էր կազմված լինել, սակայն չի բացառվում այն փաստը, որ իրականում նման նամակները կազմվում էին աչքի առաջ ունենալով դասական ճառերի տեքստերի օրինակները։ Քննարկվող ժամանակաշրջանի պատմական իրադրությունը չի բացառում նման նամակի գոյությունը։ Կ. Թումանովը (նշվ. աշխ., էջ 256) չի կարողանում ժխտել, որ SHA-ի տեղեկությունները՝ Հռոմի հետ Իբերիայի (Վիրքի) և Ալբանիայի (Աղվանքի) համագործակցության մասին անուղակի հաստատում են ստանում հավաստի աղբյուրների կողմից։ Օրինակ, մոզպետ Կարտիրի արձանագրության մեջ խոսվում է իրանական հարձակման մասին Վիրքի և Աղվանքի դեմ 260 թ. հետո։

[85] Ս. Տ. Երեմյան, Նախշ-ի Ռուստեմի «Քաաբա-ի Զարդուշտ» հուշարձանի արձանագրության վկայությունները Հայաստանի մասին, էջ 64—65։

տիայից[86]։ Ահա սրա փոխարեն 261 թ. Շապուհ I-ը վրաց թագավոր է նշանակել «Քաաբա-ի Զարդուշտ» արձանագրության մեջ հիշատակվող Համազասպին։ Լեոնտի Մռովելին սրան հիշատակում է Միրիան-Միհրան անվան տակ և հիմնադիր է համարում նոր դինաստիայի, որը կոչվում է «Խոսրովյան» (ხოსროიანნი)[87], որ, ինչպես տեսանք, նույն «Քաաբա-ի Զարդուշտ» արձանագրության Սասանյան արքայատան անդամների «Խոսրով» տիտղոսն է հանդիսանում։ Հիշյալ Համազասպ-Միրիան «Խոսրովյանը» միայն հեռավոր կապ կարող էր ունենալ Սասանյան արքայատոհմի հետ և պատահական չէ, որ ավանդական պատմությունը սրան համարում է «հարճորդի»[88], «Քասրե»[89] Արտաշիր Սասանյանի[90]։ Ըստ Լեոնտի Մռովելու ավանդական պատմության, Միրիանը, որին պարսիկները անվանում էին Միհրան, ամուսնանում է մահացած վրաց թագավոր Ասփագուրի դստեր՝ Աբեշուրայի հետ, որը «ունի զազգն Արշակունեաց, և զՓառնաւազեանց, այլ և զՆեբրովթայն»[91]։ Ավանդության մեջ ճիշտ է արտացոլված պատմական իրականությունը՝ Համազասպ-Միհրանի հիմնական պարտականությունն էր հսկել Կովկասյան անցքերը հյուսիսային ներխուժող ցեղերից։ «Եւ խաղաց թագաւորն Պարսից, և գնաց առ ստորոտովն Կովկասու յաշխարհն իւր, գերելով զծործորս լեռինն»[92]։ Ապա շարունակում է. «Եւ միշտ կռուէր Միհրան ընդ Խազիրս[93], քանզի ջանս եդին Խազիրք առնուլ զԴարբանդն և բանալ զդուռն լայն, և ելանել ի վերայ Պարսից, և ոչ տայր նոցա թոյլ Միհրան»[94]։

Լեոնտի Մռովելին, հետևելով Ագաթանգեղոսին, այս Միրիանին նույնացնում է առաջին քրիստոնյա թագավոր Միրիան-Միհրանի հետ, որով բոլորովին շեղվում է իրական պատմությունից։

Այսպիսով, 261 թ., երբ Հայաստանում գահ բարձրացավ Խոսրով-Որմիզդ-Արտաշիրը, Վրաց աշխարհում Սասանյանները թագավոր են նշանակում նոր դինաստիայի ներկայացուցիչ Համազասպ «Խոսրովյանին» և ամբողջ Անդրկովկասը ենթարկվում է Երանշահրին։ «Քաաբա-ի Զարդուշտ» արձանագրության մեջ հիշատակված են այդ ենթակա երկրները, որոնք են, ըստ պարթևական և հունական տեքստի՝ Արմն—'Αρμενία, Վարզան—'Ιβηρία, Սիկան—Μαχελονία, Արդան—'Αλβανία և Բալասական (այս վերջինը հունարեն բնագրում չի հիշատակված), մինչև Կապ-կոհ (Կովկասյան լեռները) և դրունք Ալանաց[95], որ Դարիալի անցքը պիտի լինի։ Ուսումնասիրողները

---

86 ასფაგურ, ძე მირდატ მეფისა არშაკუნიანი, ქ. ც. I. էջ 59։

87 Միրիան թագավորի որդին և հաջորդը կոչվում է՝ «Բաքար (Բակուր), որդի Միրիանի, Խոսրովյանը»—ბაქარ, ძე მირიანისი ხოსროიანი, ქ. ც., I, էջ 30 և հտ.։

88 ნაშობი მპევლისა (ქ. ც., I. էջ 64, 67) = հարճորդի. տե՛ս «Քարթլիս ցխովրեբայի կամ վրաց պատմության հին հայերեն թարգմանությունը» (ქართლის ცხოვრების ძველი სომხური თარგმანი). Թարգմ.՝ Ի. Աբուլաձեի, Թբիլիսի, 1953, էջ 70։

89 Քասրե «Խոսրով» անվան արաբական ձևն է, տե՛ս Encyclopaedia of Islam „Kisra" բառի տակ։

90 ცხოვრება მირიანისი, ძისა ქასრე არდაშირისი სასანიანისა, (ქ. ც., I, էջ 61), որ թարգմանվում է՝ «Վարք Միհրանայ՝ որդւոյ Խոսրով-Արտաշիրի Սասանեանի»։

91 «Քարթլիս ցխովրեբայի կամ վրաց պատմության հին հայերեն թարգմ.», էջ 67։

92 Նույն տեղում, էջ 68։

93 Այս ցեղանունը V դարից սկսած գործ էր ածվում իբրև հավաքական անուն այն քոչվորների, որոնք հյուսիսից ներխուժում էին Անդրկովկաս։

94 Նույն տեղում, էջ 69։

95 E. Honigmann et A. Maricq, նշվ. աշխ., էջ 88։

վրաց թագավորության ենթարկումը Սասանյան Իրանին գնում են 253—255 թթ.[96], երբ Հայաստանի պարսկական մասում թագավոր էր Արտավազդ V-ը, իսկ Վիրքում՝ ավանդական Սաուրմագը, որոնք երկուսն էլ գահընկեց են արվել Վալերիանոսի գերությունից հետո 261 թ.։ Սրանց փոխարեն գահ բարձրացան Հայաստանում՝ Խոսրով-Որմիզդ-Արտաշիր Սասանյանը, Վիրքում՝ Համազասպ Խոսրովյանը։

Հոդվածում բերվող փաստերից հետո գալիս ենք այն եզրակացության, որ իսկապես «Խոսրովը» ոչ միայն անուն է, այլև տիտղոս, որի վրա ժամանակին ուշադրություն են դարձրել Հայկ Պերպերյանը[97], Կիրիլ Թումանովը[98] և Բրիան Մակ Դերմոն[99]։ Նշված ժամանակաշրջանում «Խոսրով»-ը բացի անուն լինելուց («բարեհամբավ», «հռչակավոր», «անվանի»)[100] եղել է մեծարման մակդիր—տիտղոս—ḫwslwb[101]։ Ամենացայտուն օրինակները մեզ տալիս է բազմիցս անգամ հիշվող «Քաաբա-ի Զարդուշտ» հուշարձանի արձանագրությունը[102]։ Այդ արձանագրության մեջ Շապուհ I-ը և նրա չորս որդիները իրենց անունից առաջ ունեն «Խոսրով» անունը իբրև մեծարման մակդիր՝ տիտղոս։ Նրանց թվում առաջինը հիշատակվում է «Արմենիայի մեծ թագավոր» «Խոսրով-Որմիզդ-Արտաշիրը (հունարեն տեքստում Χοσρόω—Ὀρμιζδ—'Αρταξειρ)[103]։ Ըստ երևույթին, հայկական էպոսում «Խոսրով» անունը դարձել է հոմանիշ Հայոց թագավոր հասկացության, ճիշտ այնպես, ինչպես վրացական էպոսում պարսկերեն «Վարան-Խուասրո-Թանգ» է կոչվել վրաց թագավոր Վախթանգը (446—502)[104]։ Այս փաստերը թերևս ասում են, որ Տրդատ II-ը կոչվել է նաև «Խոսրով-Տրդատ», իսկ էպոսում՝ պարզապես «Խոսրով»։ Այսպիսով, ստացվում է, որ ամբողջ III դարի ընթացքում հայկական ավանդությունը ճանաչում է մի Խոսրով թագավոր, որի մեջ ձուլված են Խոսրով I-ը (198—216), Տրդատ II-ը (216—273) և Խոսրով II-ը (273—287)։ Այս հավաքական «Խոսրովը» անընդհատ մարտերի մեջ է հավաքական Սասանյան թագավոր «Արտաշիրի» հետ, որի տակ թաքնված են առաջին Սասանյան թագավորները՝ Արտաշիր I-ը (227—273), Խոսրով-Շապուհ I-ը (243—272) և Խոսրով-Որմիզդ-Արտաշիրը (262--273 թթ.—«Արմենիայի մեծ թագավոր», ապա 273—274 թթ. «շահնշահ Երան և Աներան»)։ Այստեղից էլ պարզ է դառնում, որ այն Արտաշիրը, որը, ըստ երևույթին 284 թ., Անակին

[96] Տե՛ս ნოდარ ლომოური, ნარკვევები ქართლის (იბერიის) სამეფოს ისტორიიდან, თბილისი, 1975, էջ 40—41 (ռուսերեն ամփոփումը՝ Нодар Ломоури, Очерки из истории Картлийского (Иберийского) царства в III начале IV вв. н. э., Тбилиси, 1975, էջ 98։ Տե՛ս նաև՝ Г. А. Меликишвили. К истории древней Грузии, Тбилиси, 1959, էջ 392—394։

[97] Հայկ Պերպերյան. Որմիզդ-Արտաշիր՝ մեծ արքա Հայաստանի, «Զվարթնոց», II, 1944, էջ 167—173։

[98] C. Toumanoff, նշվ. աշխ., էջ 277։

[99] Brian Mac Dermot, The Conversion of Armenia in 294 A. D. REArm., VII, 1970, էջ 349։

[100] Հ. Աճառյան, Հայոց անձնանունների բառարան, հատ. Բ, Երևան, 1941, էջ 529—530։

[101] Տե՛ս В. Г. Луконин, Завоевания Сасанидов на Востоке..., էջ 36։

[102] Նույն տեղում։

[103] Տե՛ս Հ. Պերպերյան, Որմիզդ-Արտաշիր՝ մեծ արքա Հայաստանի, «Զվարթնոց», II, 1944, էջ 170։

[104] ჯუანშერი. ცხოვრება ვახტანგ გორგასლისა, „ქართლის ცხოვრება", ტ. I, თბილისი, 1955, էջ 143։ Տե՛ս նաև Հր. Աճառյան, Հայոց անձնանունների բառարան, հատ. Բ, Երևան, 1944, էջ 529—530։

ուղարկեց Տրդատ III Մեծի հորը՝ Խոսրովին (այսինքն Խոսրով II-ին) սպանելու[105], և որը մինչև այժմ Որմիզդ-Արտաշիրն է համարվել, իրականում նրա հաջորդ Վարահրան II-ը (Վռամ II, 276—293 թթ.) կամ նրա ժամանակ դեռևս «Արմենիայի մեծ թագավոր» Ներսեհը (276—293 թթ.) պիտի լինի. Խորենացուն նա հայտնի է դինաստիական «Արտաշիր» անունով։

Սակայն Հայաստանի բաժանումով չի վերջանում Տրդատ II-ի գահակալությունը։ Հետազոտողների համար անհայտ էր մնացել այն իրողությունը, որ Մեծ Հայքի թագավորության 1/5 մասը (Ծոփք և Բարձր Հայք արևմտյան նահանգները) անցավ Հռոմեական կայսրությանը, ուստի և բացավում էր Արշակունիների թագավորությունը Հայաստանի՝ նրանց կարծիքով գոյություն չունեցող հռոմեական մասում։ Այնինչ մեր պրպտումները բացահայտում են այն իրավիճակը, երբ Մեծ Հայքի հռոմեական մասում շարունակում էին թագավորել հայ Արշակունիները և առաջինը դրանցից նույն Տրդատ II-ն էր։

Վերջերս բանասերները պարզել են, որ Տրդատ անվան երկրորդ ձևն է Տիրան անունը[106]։ Մի այլ առիթով մենք պարզել ենք, որ Խորենացու մոտ Տրդատ II-ի ժամանակ տեղի ունեցած դեպքերը վերագրվում են Տիրանին։ Նոր փաստերի լույսի տակ հասկանալի են դառնում Խորենացու II գրքի ԿԲ գլխի տվյալները։ Այնտեղ ասված է, որ Տիրանը (իմա՝ Տրդատ II) «գնաց գկողմամբք Եկեղեաց, ի յաւանին Ջրմէս հաստատելով զարքունիսն»[107]։ Այս տեղեկությունը ճիշտ է արտացոլում պատմական իրականությունը։ Ինչպես տեսանք, 244 թ. հետո, Հայաստանի պարսկական մասում թագավորող Տրդատ II-ի ապստամբության հետևանքով առաջացած պարսկա-հռոմեական նոր պատերազմի արդյունքը եղավ այն, որ 253 թ. վերջնականապես վավերացվեց 244 թ. խաղաղության պայմանագիրը և Մեծ Հայքի բաժանումը երկու մասի։ Հասկանալի է, որ Տրդատ II-ը իր արքունիքով պետք է փախչեր Մեծ Հայքի հռոմեական մասը և Ջրմես ավանը այն հինավուրց կենտրոնն է, որը հայտնի էր դեռևս Ուրարտուի ժամանակներից[108]։ Ջրմեսը կամ Ծումինան (Ճմին) մինչև մ. թ. ա. 66 թ. Փոքր Հայքի թագավորության մայրաքաղաքն էր, իսկ կրոնական կենտրոնն էր Երեզ ավանը (այժմյան Երզնկան) Անահիտ դիցուհու հռչակավոր տաճարով։ Պոմպեոսի հետ Տիգրան II-ի կնքած դաշնագրի համաձայն նախկին Փոքր Հայքի թագավորության մեջ մտնող Բարձր Հայք նահանգը ճանաչվեց Մեծ Հայքի թագավորության կազմում և այնուհետև Ջրմեսը դարձավ «արքունական երկիր» հանդիսացող Բարձր Հայք նահանգի կենտրոն։

Ահա այս Ջրմեսում էր թագավորում «Տիրան»-Տրդատ II-ը։ Ինչպես տեղեկացնում է Խորենացին, այս Տիրանը «ի հանդարտութեան վարեաց թագաւորութիւնն ամս քսան և մի մեռաւ ի ճանապարհի ձեան հիւսոյ կալեալ»[109]։ Այս հարցին, ինչպես նաև Խոսրով II-ի և Տրդատ III-ի գահակալության հետ կապված հարցերին մենք անդրադառնալու ենք մի այլ տեղ։

105 Խորենացի, II, ԿԷ, էջ 203, ՀԴ, էջ 211—212։

106 Տե՛ս «Եղիշէի վասն Վարդանանց և Հայոց պատերազմին», Երևան, 1957, էջ 6։

107 Խորենացի, II, ԿԲ, էջ 194։

108 Այս վայրը տեղադրվում է Երզնկայի դաշտում, այժմյան Ջիմին գյուղի տեղում, որտեղ գտնվում է հռչակավոր հնավայր Ալթին-Թեփե բլուրը։ Այնտեղ կատարած պեղումները հայտնաբերել են ուրարտական ժամանակաշրջանի բազմաթիվ հուշարձաններ։

109 Խորենացի, II, ԿԲ, էջ 194։

# РАЗДЕЛ ЦАРСТВА ВЕЛИКОЙ АРМЕНИИ В 244—253 гг. МЕЖДУ САСАНИДСКИМ ИРАНОМ И РИМСКОЙ ИМПЕРИЕЙ

Академик АН АрмССР С. Т. ЕРЕМЯН

(Резюме)

В свете новейших исследований первоисточников и обнаруженных в последнее время эпиграфических памятников делается очевидным тот факт, что «постыдный» мир, заключенный в 363 году римским императором Иовианом с сасанидским царем Шапуром II, и последовавший за этим раздел царства Великой Армении в 384—387 гг. между двумя борющимися державами древнего мира — сасанидским Ираном и Римской империей, были повторением событий, происшедших в более раннее время (в 244—253 гг.) в сходных исторических условиях.

В середине III столетия сасанидский Иран переживает период своего могущества и ведет борьбу с Римской империей за овладение ключевыми позициями на Ближнем Востоке. Интересы двух держав сталкивались в Месопотамии, Сирии и Армении. Сасанидские цари стремились завладеть царством Великой Армении, где нашли убежище разгромленные в Иране представители парфянской династии Аршакидов. В ожесточенной борьбе двух держав армянские Аршакиды на первых порах старались держаться нейтральной позиции; если это не удавалось, они выступали против Сасанидов на стороне римлян.

В течение второй четверти III столетия Сасаниды смогли закрепиться на всех территориях, окружавших Великую Армению — с востока, юго-востока и юга, после чего иранские войска вторглись в Месопотамию и Сирию и угрожали Антиохии на Оронте. Блестящие рейды иранских войск в тыл римлян заставили императора Филиппа Араба (244—249) заключить мирный договор с сасанидским царем Шапуром I (243—272), который ранневизантийский историк Зосим называет «постыднейшим миром». Согласно этому мирному договору римляне обязывались не оказывать Великой Армении помощи, если на нее нападут иранцы. Однако император Филипп надеялся, что он отделается только контрибуцией, а Великая Армения останется в сфере политического влияния Рима. Из недавно обнаруженной трехъязычной надписи Шапура I в Накш-и Рустеме, на памятнике «Кааба-и Зардушт», узнаем, что из-за Армении снова столкнулись Сасаниды и римляне, и армянский царь Тиридат II (217—252) просил помощи у императора Филиппа Араба и даже послал послов к кушанскому царю. По свидетельству ранневизантийского историка Зонары, Филипп Араб взял обратно Месопотамию и Армению. Нарушение мирного договора произошло около 249 года и снова начались военные столкновения. Наследник престола Ормизд-Арташир в 252 году, став во главе иранских войск, вторгся в римскую Месопотамию и Сирию. Во время блестящего рейда иранские войска заняли 37 городов Сирии, Киликии и Каппадокии, дойдя до граничащего с Великой Арменией города Малой Армении Саталы. Царство Великой Армении оказалось со всех сторон окруженным иранскими войсками и отрезанным от

Римской империи, которую на западе беспокоили готы. В создавшихся условиях императору Галлу (251—253) пришлось признать мирный договор 244 года, и восставшая Великая Армения должна была подчиниться этому решению. Она была разделена между двумя державами по той демаркационной линии, которая позже была возобновлена по договору 387 года. В обеих частях Великой Армении оставались армянские аршакидские цари. Тиридат II со своим двором обосновался в римской части — в Екелесене, а в Персармении воцарился один из сыновей или племянников Тиридата II Артавазд V (252—261). Не прошло и десяти лет, как Артавазд V был низложен, а иранская часть Великой Армении была объявлена «дастакертом» (наследственной собственностью) династии Сасанидов и вторым царством после царства «шахиншаха Ирана и не-Ирана». «Великим царем Великой Армении» Шапур I назначил своего сына и наследника престола Ормизд-Арташира (262—272); в истории Армении начинается 36-летний период царствования представителей династии Сасанидов (262—298 гг.), который Мовсес Хоренаци называет «временем безвластия». Сасанидский Иран находился в зените своего могущества. В 260 году был захвачен в плен римский император Валериан (253—260), и в трехъязычной надписи «Кааба-и Зардушт», высеченной в 262 г. в связи с этими победами, Ормизд-Арташир фигурирует под победным титулом «Хосров» (Χοστρω—'Ωρμιζδ—Ἀρταξειρ).